Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 2 ՀՈՒՆՎԱՐ 1957

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Տպագրության հասցեն.— Երևան, ՀԿԹ կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ: Հեռախոս՝ 2—52—78:







# ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ԴԵՊՈՒՏԱՏՆԵՐԻ ՏԵՂԱԿԱՆ ՍՈՎԵՏՆԵՐԻ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Ս. ՂԵՎՈՆԴՅԱՆ
Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի Նախագահության քարտուղար

Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի Նախագահության Հրամանագրով աշխատավորների դեպուտատների շրջանային, քաղաքային, գյուղական և ավանային Սովետների ընտրությունները նշանակված են 1957 թվականի մարտի 10-ին, կիրակի օրը:

Աշխատավորների դեպուտատների տեղական Սովետների ընտրությունները քաղաքական մեծ նշանակություն ունեն: Իր ծավալով այդ ընտրական կամպանիան հանդիսանում է ամենամասսայականը: Նա ընտրությունների կազմակերպման մեջ է ներգրավում աշխատավորների լայն խավեր: Բավական է ասել, որ առաջիկա ընտրություններում որպես ընտրական հանձնաժողովների անդամներ կընտրվեն ավելի քան 60 հազար մարդ, որոնք կառաջադրվեն





հասարակական կազմակերպությունների և աշխատավորների ընկերությունների կողմից։ Բացի դրանից, ընտրությունների կազմակերպման շրջանում ակտիվ աշխատանք կտանեն նաև հազարավոր ագիտատորներ և վստահված անձինք։ Նախընտրական կամպանիայի մեջ ընտրողների այդքան լայնորեն ընդգրկումը հանդիսանում է սովետական սոցիալիստական դեմոկրատիզմի ծաղկման և զարգացման վառ ապացույցը։ Մեր Կոնստիտուցիայի համաձայն 18 տարին լրացած բոլոր քաղաքացիներին, անկախ նրանց ռասայական և ազգային պատկանելիությունից, սեռից, դավանանքից, կրթական ցենզից, նստակեցությունից, սոցիալական ծագումից, գույքային վիճակից և անցյալ գործունեությունից իրավունք է տրվում մասնակցել ընտրություններին և ընտրվել աշխատավորների դեպուտատների Սովետներում։

Ընտրությունները մեր երկրում անց են կացվում ընդհանուր, հավասար և ուղղակի ընտրական իրավունքի հիման վրա, գաղտնի քվեարկությամբ։ Մեր ընտրական օրենքը, ի տարբերություն բուրժուական պետությունների օրենքի, ստեղծում է բոլոր պայմանները, որպեսզի ընտրությունները լինեն



իսկապես համաժողովրդական, իսկապես դեմոկրատական։

Աշխատավորների դեպուտատների տեղական Սովետները՝ դրանք բնակչության ամենամոտիկ պետական իշխանության օրգաններն են, որոնց միջոցով մեր երկրի աշխատավորությունը անմիջական ակտիվ մասնակցություն է ցուցաբերում պետության ղեկավարման գործում։

Վերջին ընտրություններից անցել է երկու տարի։ Այդ ժամանակամիջոցում աշխատավորների դեպուտատների շրջանային, քաղաքային, գյուղական և ավանային Սովետները խոշոր աշխատանք են կատարել ռեսպուբլիկայի քաղաքների, շրջանների բնակչության սպասարկման բարելավման գործում, նրանք սկսել են ավելի զգայուն վերաբերմունք ցուցաբերել դեպի մասսաների կարիքները, արագորեն վերացնել դեպուտատների և ընտրողների կողմից նշված՝ առանձին գործկոմների գործունեության մեջ նկատված թերությունները։ Գործկոմներից շատերը նկատելիորեն բարելավել են մշտական կապը իրենց Սովետների հետ, նրանց մեծ մասը այս երկու տարվա ընթացքում իր գործունեության մասին հետևողականորեն հաշվետու էր լինում

իրեն ընտրած Սովետների առջև։ Օրինակ, ռեսպուբլիկայի 429 գյուղական Սովետների գործկոմներից իրենց Սովետների առջև հաշվետու են եղել 421-ը։ Շատ շրջաններում և քաղաքներում իրենց Սովետների առջև հաշվետու են եղել նաև շրջանային և քաղաքային Սովետների գործկոմները։ Տեղական Սովետների դեպուտատների գերակշիռ մեծամասնությունը հանդիպումներ է ունեցել իր ընտրողների հետ, նրանցից շատերը ակտիվ մասնակցություն են ցուցաբերել տեղական Սովետների գումարված սեսիաներում։ Սովետների մշտական հանձնաժողովներում մասնակցել են ավելի քան 8.400 դեպուտատ։ Աշխատավորների դեպուտատների Սովետները, կենսագործելով ՍՄԿԿ XX համագումարի պատմական որոշումները և ծավալելով սոցիալիստական մրցությունը, հասել են որոշակի հաջողությունների։ Արդյունքները երևան են եկել գյուղատնտեսության և անասնաբուծության զարգացման պլանների կատարման և գերակատարման, բերքատվության բարձրացման և անասունների մթերատվության ավելացման, արդյունաբերության կողմից արտադրանքի թողարկման պլանների կատար-



ման և նրանց տեխնիկա-տնտեսական ցուցանիշների բարելավման գործում։

Այժմ ամբողջ ռեսպուբլիկայում ծավալվել է ընտրությունների լայն նախապատրաստական աշխատանքը։ Ներկայումս տասնյակ հազար աշխատավորներ ընդգրկվում են այդ կարևորագույն քաղաքական կամպանիայի մեջ։ Բոլոր շրջաններում, քաղաքներում և գյուղերում արդեն առաջադրված և հաստատված են ընտրական հանձնաժողովների անդամները։ Որոշված են ընտրական օկրուգների սահմանները և հաստատված են օկրուգային ընտրական հանձնաժողովները։ Շուտով կկազմվեն ընտրական տեղամասերը և կընտրվեն տեղամասային ընտրական հանձնաժողովները։

Անհրաժեշտ է ընտրական կամպանիայի հենց առաջին իսկ օրերից բնակչության մեջ ծավալել բացատրական աշխատանք, այդ գործի մեջ ներգրավելով արդյունաբերության, գյուղատնտեսության առաջավորներին, ինչպես նաև քաղաքային ու գյուղական ինտելիգենցիային։ Հատուկ ուշադրություն դարձնել մեր ընտրական սիստեմի, սովետական իրապես ժողովրդական դեմոկրատիայի առավելությունների պարզա-

բանման և բուրժուական կեղծ, շահագործողական դեմոկրատիայի բացահայտման վրա։

Ամբողջ ագիտացիոն աշխատանքը պետք է կենտրոնանա սովետական աշխատանքի ամեն կերպ բարելավման, Սովետների գործունեության մեջ թերությունների վերացման և նշված միջոցառումների կատարման ապահովման շուրջը։

Հատուկ ուշադրություն պետք է դարձնել մինչև ընտրությունների օրը 18 տարին լրացած երիտասարդ ընտրողների հետ տարվող աշխատանքի վրա։ Այդպիսի ընտրողներին անհրաժեշտ է ծանոթացնել մեր ընտրական օրենքի սկզբունքների հետ, ժողովրդի երջանկության, սոցիալիստական պետության ամրապնդման և ծաղկման համար Սովետների մղած հերոսական պայքարի հետ և վեցերորդ հնգամյակում երկրի ժողովրդական տնտեսության զարգացման խնդիրների հետ։

Անհրաժեշտ է խոստովանել, որ կազմակերպական տեսակետից տեղական Սովետների ընտրությունները ավելի բարդ են, քան մյուս ընտրությունները, և ունեն իրենց առանձնահատկությունները։

Բավական է ասել, որ ռեսպուբլիկայում



ընտրվելու են 13 հազարից ավելի դեպուտատներ։ Նշանակում է ամեն մի շրջանում պետք է ընտրվեն աշխատավորների դեպուտատների գյուղական, ավանային, քաղաքային և շրջանային Սովետների մի քանի հարյուր դեպուտատներ։ Ինչպես և անցյալ ընտրությունների ժամանակ ամբողջ աշխատանքը պետք է կենտրոնանա ընտրական տեղամասում, որը հանդիսանում է ընտրողների շրջանում տարվող ագիտացիոն-մասսայական աշխատանքի կենտրոնը։

Ընտրությունների հաջողության գործում խոշոր նշանակություն ունի ընտրական ցուցակները ճիշտ և խնամքով կազմելը։ Այստեղ խիստ կարևոր է, որ ընտրական ցուցակները կազմելու ժամանակ մեծ ուշադրություն դարձվի այդ ցուցակներում ընտրական օկրուգների համարների նշանակման վրա։ Այդ համարներով տվյալ ընտրական տեղամասում ընտրությունների օրը տրվելու են ընտրական բյուլետենները։ Ընտրական ցուցակները կազմելուց և խնամքով ստուգելուց հետո գործկոմները պետք է ընտրություններից 35 օր առաջ փակցնեն, որպեսզի ընտրողները հնարավորություն ունենան կարդալու։

Թացթողումների, անճշտությունների և աղավաղումների դեպքում համապատասխան Սովետները պետք է կարճ ժամանակում քննարկեն դրանց վերաբերյալ բողոքները և ցուցակների մեջ մտցնեն անհրաժեշտ ուղղումներ։

Ամբողջ ընտրական կամպանիայում կարևոր էտապ է դեպուտատության թեկնածուների առաջադրումը։ Սովետական ընտրական օրենքը Սովետների դեպուտատության թեկնածուներ առաջադրելու իրավունք է ընձեռում հասարակական կազմակերպություններին և աշխատավորների ընկերություններին, ինչպես նաև հիմնարկներում, ձեռնարկություններում և սովխոզներում՝ բանվորների, ծառայողների ընդհանուր ժողովներին, իսկ կոլտնտեսություններում՝ գյուղացիներին և այլն։ Միաժամանակ ընդհանուր ժողովներում տեղական Սովետների դեպուտատության թեկնածուների առաջադրման ժամանակ ընտրական օկրուգներում ընտրվում են նաև վստահված անձեր։

Խնդիրն այն է, որ դեպուտատության թեկնածուներ առաջադրվեն լիովին արժանավոր, պարտիայի գործին նվիրված մարդիկ, բանվորներ ու բանվորուհիներ, կոլ-



տնտեսականներ և կոլտնտեսուհիներ ու ինտելիգենցիայի լավագույն ներկայացուցիչներ, որոնք գործնականում ընդունակ են պայքարելու պարտիայի և կառավարության դիրեկտիվները լիովին կենսագործելու համար։ Ագիտատորները պետք է մեծ աշխատանք տանեն կոմունիստների և անպարտիականների բլոկի թեկնածուների օգտին ագիտացիա ծավալելու գործում։

Ի նկատի ունենալով, որ դեպուտատների առավել մեծ քանակը պետք է ընտրվի գյուղական և ավանային Սովետներում, անհրաժեշտ է ավելի մեծ ուշադրություն դարձնել գյուղում տարվող քաղաքական-մասսայական աշխատանքի վրա։

Մեր ամբողջ ագիտացիոն-մասսայական աշխատանքը տեղերում պետք է անցկացնել այնպես, որպեսզի աշխատավորների դեպուտատների տեղական Սովետների ընտրությունները նշանավորվեն արտադրական նոր հաջողություններով, սոցիալիստական մրցության լայն ծավալման միջոցով հասնել մեր ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում ՍՄԿՊ XX համագումարի առաջադրած խոշորագույն խնդիրների լիակատար կենսագործմանը։

---

# ՍԵՐՄՆԱԲՈՒԾՈՒԹՅԱՆ ՀԵՏԱԳԱ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՀԱՄԱՐ

Գ. ԿԱՏՎԱԼՅԱՆ

Բասարգեչարի շրջանի Նորակերտի էլիտա-սերմնաբուծական տնտեսության վարիչ

ՍՄԿԿ XX համագումարը գյուղատնտեսության բնագավառի աշխատողներից պահանջեց լրջորեն զբաղվել սերմնաբուծական տնտեսությունը բարելավելու և այդ բնագավառում եղած թերությունները արագորեն վերացնելու գործով։

Բասարգեչարի շրջանի Նորակերտ գյուղի «Կարմիր Հոկտեմբեր» կոլտնտեսությունը հանդիսանում է էլիտային սերմնաբուծական կոլտնտեսություն։ Աշխատանքի հիմքում դնելով համագումարի որոշումները, կոլտնտեսությունը լուրջ հաջողություններ է ձեռք բերել սերմնաբուծության զարգացման, պետությանը ընտիր սորտային սերմացու հանձնելու բնագավառում։

Կոլտնտեսությունն իր ունեցած 1.726



հեկտար վարելահողից 1.000 հեկտարն օգտագործում է հացահատիկի տեսակավոր ցանքի համար։

Ինչպե՞ս է կոլտնտեսությունը ապահովում բարձրորակ սերմացուի ստացումը։ Այստեղ աշնանացանը կատարվում է պարարտացված, մշակված սև ցելի և կորնգանից ազատված տարածության վրա, իսկ գարնանացանը՝ պարարտացված ցրտահերկի վրա։ Դաշտերի պարարտացումը կատարվում է գոմաղբով և հանքային պարարտանյութով։ Ամեն տարի սնուցման և պարարտացման նպատակով դաշտ է փոխադրվում 6.000 տոննա գոմաղբ և 120—150 տոննա հանքային պարարտանյութ։

Ելնելով դաշտամասերի բերրիության վիճակից, նախօրոք ծրագրում ենք թե որտեղ, ինչ քանակի և ինչ պարարտանյութ պետք է տալ, ըստ այնմ էլ կատարվում է պարարտացումը։ Այսպես, օրինակ, «գիլի» կոչվող հողամասը, ինչպես 1955 թվականին, այնպես էլ 1956 թվականին պարարտացրինք միայն սուպերֆոսֆատով։ Այդ դաշտամասը հարուստ է տորֆով, ազոտով, որի հետևանքով ցանքը հասկակալման շրջանում փռվում է գետին և ընկնում է հատիկի որակը, ստացվում են նվազ հա-

տիկներ, ցածր բերք։ Այդ նկատի ունենալով, մենք «գիլի» դաշտամասը պարարտացնում ենք սուպերֆոսֆատով, իսկ սուպերֆոսֆատը, ֆոսֆորի առկայության պատճառով նպաստում է հացահատիկի ցողունների ամրապնդմանը։ Դրան հակառակ, վերին գոտում տալիս ենք գոմաղբ և ազոտով հարուստ հանքային պարարտանյութ։ Նման ձևով պարարտացումը նպաստում է, որպեսզի սննդանյութերից աղքատ հողամասերից ևս ստանանք բարձր բերք։

Մյուս ոչ պակաս կարևորություն ունեցող հարցը, դա լավորակ սերմացուով ցանք կատարելն է։ Կոլտնտեսությունը ցանքը կատարում է տեսակավոր սերմերով։ Նախքան ցանքը, բրիգադիրների, փորձված կոլտնտեսականների, մասնագետների հետ միասին որոշում են, թե որ հողակտորում, ինչ քանակի սերմացու պետք է ցանել։ Յուրաքանչյուր հեկտարի վրա ցանում ենք՝ 200—210 կիլոգրամ աշնանացան ցորեն, 150—170 կիլոգրամ գարնանացան ցորեն, 190—200 կիլոգրամ գարնան գարու կոնդիցիոն, առաջին դասի սերմացու։

Բերքատվության բարձրացման համար կարևոր նշանակություն ունի նեղշար շարքացանով կատարվող ցանքը, որի հետևան-



քով հատիկները հողում ընկնում են հավասար հեռավորության վրա, հողում եղած սննդանյութերն օգտագործվում են հավասար չափով և կանխվում է մոլախոտերի աճը։

Հայտնի է, որ Նորակերտի հողամասերի մեծ մասը անջրդի է, այդ նկատառումով կոլտնտեսությունը ձմռանը դաշտում կուտակում է մեծ քանակությամբ ձյուն, այսինքն՝ 25—50 մետր իրարից հեռավորության վրա ստեղծում ենք ձյան պատնեշներ՝ եկած և քամու ժամանակ բերած ձյունը դաշտում պահպանելու համար։ Բացի այդ, վաղ գարնանը առաջին իսկ հնարավորության դեպքում ինչպես աշնանացանը, այնպես էլ աշնանացանի տակ գնացող նախորդ տարում կատարած սև ցելը և խոտի համար հնձվող կորնգանների տարածությունները փոցխում ենք զիգզագով, դրանով կանխվում է հողում եղած ջրի գոլորշիացումը, նվազեցվում է մոլախոտերի աճը, արագացվում աշնանացան ցորենի, կորնգանի աճը։ Բացի այդ, աշնանացանի բաց տարածությունների վրա, որտեղ չկա ձյան ծածկոց, 1—1,5 սանտիմետր շերտով շաղ ենք տալիս տորֆի փոշի։ Այդպես վարվելով 1954—55 թ. թ. ձմռանը,

ցանքը փրկեցինք ցրտահարության վտանգից։

Մեզ մոտ լուրջ ուշադրություն է դարձվում նաև ցանքերի մշակության աշխատանքների ժամանակին և ճիշտ կատարման վրա։ Ցանքերի մեջ մոլախոտ նկատվելու դեպքում, անմիջապես կատարվում է քաղհան, իսկ տեսակավոր սերմացուի ցանքերում՝ պարտադիր քաղհան։

Բերքատվության բարձրացման և սերմացուի որակի բարելավման վրա խիստ բացասական ազդեցություն է թողնում հացահատիկի մրիկ հիվանդությունը։ Այդ չարիքը վերացնելու համար կոլտնտեսությունը կիրառեց մի շարք լուրջ միջոցառումներ, այսպես, օրինակ, սերմացուն առաջին անգամ ախտահանվեց ջերմային եղանակով, ապա այն չորացնելուց հետո ախտահանվեց գրանոզանով, որը ոչ միայն ոչնչացնում է մրիկի սպորները, այլև պայքարում է հողի վարակման դեմ։

Նշված միջոցառումների կիրառման շնորհիվ կոլտնտեսությունը հասավ այն բանին, որ սերմացուի միջից իսպառ վերացվեց մրիկը։ Բավական է նշել, որ 1955—1956 թ. թ. Զագոտզեռնո հանձնած 15 հազար ցենտներ տեսակավոր սերմացուի մեջ չի



հայտնաբերված մրիկով վարակված և ոչ մի հատիկ։

Կոլտնտեսության վարչության և մասնագետների ուշադրությունից չի վրիպել նաև վարը, ցանքը, բերքահավաքը ճիշտ ժամկետներում կատարելը։

Վերոհիշյալ կոմպլեքս միջոցառումների շնորհիվ կոլտնտեսությունն ինչպես 1955 թվականին, այնպես էլ 1956 թվականին հասկավոր կուլտուրաներից հավաքեց բարձր բերք։ 1955 թվականին ցանքի տակ եղած 1000 հեկտար հացահատիկի յուրաքանչյուր հեկտարից հավաքվեց 16 ցենտներ տեսակավոր հացահատիկ, իսկ 1956 թվականին, չնայած կլիմայական անբարենպաստ պայմաններին, դարձյալ նույնքան տեսակավոր հացահատիկ։ Իսկ էլիտային սուպեր և էլիտային ցանքատարածության յուրաքանչյուր հեկտարից ինչպես 1955 թվականին, այնպես էլ 1956 թվականին ըստ տացանք և պետությանը հանձնեցինք 32—34 ցենտներ ընտիր սերմացու, բերքատվության պլանը կատարելով 260—300 տոկոսով։ Անվանի բրիգադիր Հ. Մկրտչյանի բրիգադան վերջին երկու տարում 70 հեկտար ցանքատարածության յուրաքանչյուր հեկտարից հավաքել է 36—37 ցենտներ

բերք։ Պատահական չէ, որ կոլտնտեսությունը 1956 թվականին լայն ցուցադրման կարգով մասնակցեց Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսին։

Կոլտնտեսությունը չտարվելով սերմնաբուծության բնագավառում ձեռք բերած հաջողություններով, ստեղծել է պայմաններ 1957 թվականին և հետագայում է՛լ ավելի բարձր բերք ստանալու համար։

Անցած տարի օգոստոսի 20-ին սկսեցինք և սեպտեմբերի 20-ին ագրոտեխնիկական լավագույն ժամկետում ավարտեցինք 600 հեկտար աշնանացանը։ Ամբողջ ցանքը կատարվեց մշակված սև ցելի, և կորնգանից ազատված տարածության վրա, բարձրորակ տեսակավոր սերմացուով։

Նախքան ձյան գալը ամբողջ ցանքը թփակալված էր։

Այս բոլորն արդյունք է նաև այն բանի, որ վարի, ցանքի, բերքահավաքի և սերմացուի զտման ամբողջ աշխատանքները կատարվում են մեքենաների միջոցով։

Պարտիայի XX համագումարի պատմական որոշումները սերմնաբուծության զարգացման վերաբերյալ պատվով կկատարեն մեր կոլտնտեսականները։

---

## ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԹԵՄԱՆԵՐ

# ԱՐԱԲԱԿԱՆ ԵՐԿՐՆԵՐԻ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԸ ԱԶԱՏՈՒԹՅԱՆ ԵՎ ԱՆԿԱԽՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ ՄՂՎՈՂ ՊԱՅՔԱՐՈՒՄ

Վ. ՄԱՄԱԵՎ

Ազատության և ազգային անկախության համար մղվող պայքարը օրեցօր է՛լ ավելի լայնորեն է ընդգրկում իմպերիալիզմի կողմից ճնշված ժողովուրդներին։

Մոտ չորս հարյուրամյակների ընթացքում արաբական շատ երկրներ գտնվում էին թյուրքական ծանր լծի տակ։ Այդ լծին այնուհետև փոխարինեց եվրոպական գաղութարարների դաժան տիրապետությունը։ 19-րդ դարի ընթացքում և 20-դարի առաջին քառորդում համարյա բոլոր արաբական երկրները արդեն բաժանված էին եվրոպական գաղութային պետությունների միջև։ Անգլիայի տիրապետության տակ ընկան Եգիպտոսը, Սուդանը, Իրաքը, Հորդանանը, ինչպես նաև Արաբական թերակղզում և Պար-

սից ծոցում գտնվող մի շարք այլ երկրներ։ Ֆրանսիան զավթեց Ալժիրը, Թունիսը, Մարոկկոյի մեծ մասը, Սիրիան և Լիբանանը, Իտալիան գրավեց Լիբիան, իսկ Իսպանիան՝ Մարոկկոյի հյուսիսային մասը։

Արևմտյան գաղութարարների երկարատև տիրապետության հետևանքով արաբական երկրները վերածվեցին իմպերիալիստական երկրների ագրարային-հումքային կցորդի, ապրանքների և կապիտալի շահավետ արտահանման ոլորտի, Անգլիայի, Ֆրանսիայի, իսկ վերջին տասնամյակներում նաև ԱՄՆ-ի կապիտալիստական մոնոպոլիաների դաժան շահագործման օբյեկտի։

Այդ երկրների ամենաբերրի հողերը, ամենակարևոր հումքային ռեսուրսները և, առաջին հերթին, Արաբական Արևելքի գլխավոր հարստությունը՝ նավթը, ընկան գաղութարարների ձեռքը։ Զավթելով արաբական երկրների էկոնոմիկայի գլխավոր դիրքերը, օտարերկրյա կապիտալը ամեն կերպ խոչընդոտ էր հանդիսանում այդ էկոնոմիկայի նորմալ զարգացմանը, արգելակում էր ազգային արդյունաբերության աճը, կասեցնում գյուղատնտեսության զարգացումը։ Այսպես, օրինակ, անգլիական գաղութարարների ջանքերով Եգիպտոսը, որը բարենպաստ



կլիմայական պայմաններ ունի բազմաճյուղ գյուղատնտեսության զարգացման համար, վերածվեց գերազանցապես մեկ կուլտուրայի՝ բամբակի արտադրողի։ Այդ նույն ժամանակ Եգիպտոսը ստիպված էր ներմուծել հաց և այլ գյուղատնտեսական մթերքներ։

Գաղութարարների տիրապետության ուղղակի հետևանքը հանդիսացան արաբական երկրների աշխատավորների կյանքի և կուլտուրայի ծայրահեղ ցածր մակարդակը, այդ պետությունների տնտեսական հետամնացությունը, ֆեոդալական հարաբերությունների ուժեղ մնացուկների առկայությունը, մշակող ծանր արդյունաբերության բացակայությունը, գյուղատնտեսության միակողմանի զարգացման բնույթը և գաղութային էկոնոմիկայի մյուս բնորոշ գծերը։ Այս կամ այն չափով դա բնորոշ է բոլոր արաբական պետություններին, հատկապես տնտեսապես առավել հետամնացներին (Սաուդյան Արաբիա, Եմեն, Լիբիա, Սուդան և այլն)։

Սակայն արաբական մի շարք երկրներում վերջին տարիներս աճում է նաև ազգային արդյունաբերությունը, միջոցներ են ձեռնարկվում ինքնուրույն տնտեսական զարգացման համար։

Արաբական երկրների ժողովուրդները շա

տասնամյակների ընթացքում համառ պայքար են մղել գաղութային լծի դեմ հանուն իրենց ազատության և ազգային անկախության։ Ազգային-ազատագրական շարժումը առանձնապես հզոր թափ ստացավ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայից հետո, նրա անմիջական ազդեցության տակ։

Վերջին տասը տարիների ընթացքում շատ արաբական երկրներ ձեռք բերեցին պետական անկախություն։ Բայց իմպերիալիստները դեռևս շարունակում են մի քանի արաբական երկրներ պահել գաղութային վիճակի մեջ և ամեն կերպ խանգարում են այն երկրների անկախության և սուվերենիտետի ամրապնդմանը, որոնք արդեն բռնել են ինքնուրույն պետական զարգացման ուղին։ Արաբական երկրների տնտեսական, իսկ մի շարք դեպքերում էլ նաև քաղաքական կախվածությունը իմպերիալիստական պետություններից հաճախակի շարունակում է պահպանվել նաև այն բանից հետո, երբ այդ երկրները հռչակել են պետական անկախություն։ Պարզ է, որ այդ բոլորի հետ չեն կարող և չեն ուզում հաշտվել ազատասեր արաբական ժողովուրդները։ Արաբական ժողովուրդների ազգային-ազատագրական պայ-



քարը աճում է անհաղթահարելի ուժով։ Նրա բնորոշ գիծն է հանդիսանում ժողովրդական մասսաների քաղաքական ակտիվության և կազմակերպվածության աճը։ Տնտեսապես առավել զարգացած արաբական երկրներում՝ Եգիպտոսում, Սիրիայում և այլն,— ավելի վճռականորեն մասսաների գլուխ է կանգնում բանվոր դասակարգը, որը պայքարում է ազգային-ազատագրական շարժման մեջ հեգեմոնիայի համար, գյուղացիության և քաղաքային բնակչության կիսապրոլետարական և մանր բուրժուական խավերի հետ սերտ դաշինքի համար։

Արաբական երկրների ժողովուրդները պահանջում են ոչնչացնել օտարերկրյա մոնոպոլիաների գերիշխանությունը, վարել արաբական պետությունների անկախ խաղաղասիրական արտաքին քաղաքականություն, որը հիմնված լինի ՄԱԿ-ի Կանոնադրության և Ասիայի ու Աֆրիկայի երկրների Բանդունգի կոնֆերանսի սկզբունքների վրա։ Միաժամանակ նրանք պայքարում են ֆեոդալական մնացուկների վերացման, իրենց երկրների քաղաքական կյանքի դեմոկրատացման համար։

Արաբական ժողովուրդների ազգային-ազատագրական պայքարը արդեն հասցրել է

լուրջ հաջողությունների։ Հակաիմպերիալիստական շարժման ընթացքում, որը վերջին տարիներս հատուկ ուժով ծավալվեց, եգիպտական ժողովուրդը տապալեց պրոգաղութակալական միապետական ռեժիմը և հաստատեց ռեսպուբլիկական կարգ։ 1956 թվականի ամռանը Եգիպտոսը հասավ իր տերիտորիայից անգլիական օկուպացիոն զորքերի դուրս բերմանը և ազգայնացրեց Սուեզի ջրանցքի ընկերությունը, որը գտնվում էր անգլո-ֆրանսիական ֆինանսական մագնատների ձեռքում։ Դրանով իսկ Միջին և Մերձավոր Արևելքի շրջանում ուժեղ հարված հասցվեց իմպերիալիզմի գաղութային սիստեմին։

Անգլո-ֆրանսիական իմպերիալիստները, փորձելով ետ վերադարձնել Արաբական Արևելքում իրենց կորցրած դիրքերը, Եգիպտական Ռեսպուբլիկայի դեմ զինված հարձակում կազմակերպեցին, որի համար օգտագործեցին Իսրայելի պետությունը։ Նրանք բարբարոսաբար ավերեցին Եգիպտոսի խաղաղ քաղաքներն ու գյուղերը, սպանեցին հազարավոր բնակիչների։

Բոլոր խաղաղասեր ժողովուրդների աջակցությամբ Եգիպտոսի ժողովուրդը ագրեսորներին հակահարված տվեց և պաշտպանեց



իր հայրենիքի անկախությունը։ Բոլոր խաղաղասեր ժողովուրդների ճնշման տակ Անգլիայի, Ֆրանսիայի և Իսրայելի կառավարությունները ստիպված եղան ենթարկվել ագրեսիան դադարեցնելու և Եգիպտոսից զորքերը դուրս բերելու մասին ՄԱԿ-ի Գլխավոր Ասամբլեայի որոշումներին։

1956 թվականը նշանավորվեց Աֆրիկայում երեք նոր արաբական պետությունների ծնունդով։ 1956 թվականի հունվարի 1-ին հռչակվեց Սուդանի պետական անկախությունը, որը նրա ժողովուրդը ձեռք բերեց ազգային-ազատագրական համառ պայքարում։ Մարտի 2-ին ֆրանսիական կառավարությունը ստիպված եղավ պաշտոնապես ճանաչել Մարոկկոյի անկախությունը։ Մարտի 20-ին անկախ պետություն հայտարարվեց Թունիսը, որը 75 տարի գտնվում էր ֆրանսիական տիրապետության տակ։ Վերջերս Սուդանը, Թունիսը և Մարոկկոն ընդունվեցին Միավորված Ազգերի կազմակերպության մեջ։

Հյուսիսային Աֆրիկայում միակ արաբական երկիրը, որը դեռևս չի հասել ազգային անկախության, հանդիսանում է Ալժիրը։ Ավելի քան երկու տարի է, ինչ այդ երկրում տեղի է ունենում արյունահեղ պատերազմ։

Փորձելով ճնշել ազգային-ազատագրական շարժումն Ալժիրում, ֆրանսիական կառավարությունը ալժիրցիների դեմ հանեց համարյա կես միլիոնանոց բանակ և ամենադաժան ռեպրեսիաներ է կիրառում, ինչին միայն ընդունակ են գաղութարարները։ Բայց օրեցօր ավելի ակնհայտ է դառնում, որ Ալժիրում ֆրանսիական գաղութային պատերազմը հանդիսանում է մի անհույս ավանտյուրա։ Վաղ թե ուշ իր ազատության և անկախության համար Ալժիրի ժողովրդի մղած արդարացի պայքարը կպսակվի լիակատար հաջողությամբ։

Մասսաների քաղաքական ակտիվության զարթոնքը Արաբական երկրներում իր արտահայտությունն է գտնում իմպերիալիզմի և ներքին ռեակցիայի դեմ չընդհատվող ժողովրդական ելույթների մեջ։ Այդ մասին առանձնապես ցայտուն կերպով են խոսում վերջին շաբաթների իրադարձությունները Իրաքում։

Բաղդադում և Իրաքի մյուս քաղաքներում տեղի են ունենում բազմամարդ ցույցեր։ Երկիրը ողողված է մասսայական գործադուլներով։ Նրանց մասնակիցները՝ Իրաքի հայրենասերները իրենց բողոքն են արտահայտում անգլո-ֆրանսիական ագրեսիայի դեմ



Եգիպտոսում։ Նրանք պահանջում են անգլիական դրածո Նուրի Սայիդի գլխավորած կառավարության հրաժարականը և Իրաքի դուրս բերումը ագրեսիվ Բաղդադի պակտից։ Փորձելով ճնշել ժողովրդական շարժումը, Իրաքի կառավարությունը դաժան ռեպրեսիաներ է կիրառում հակաիմպերիալիստական ցույցերի և գործադուլների մասնակիցների նկատմամբ։ Բայց, չնայած դրան, Իրաքի ժողովրդի հայրենասիրական շարժումը շարունակում է աճել։

Ժողովրդական մասսաների հակաիմպերիալիստական պահանջների կապակցությամբ Արաբական Արևելքի մի քանի երկրների պառլամենտներն ու կառավարությունները վերջին ժամանակներս կարևոր քաղաքական միջոցառումներ ձեռնարկեցին։ Այսպես, Հորդանանի դեպուտատների պալատը որոշում ընդունեց 1948 թվականի անգլո-հորդանանյան ստրկացուցիչ պայմանագիրը չեղյալ հայտարարելու մասին և պահանջեց իր տերիտորիայից դուրս բերել բոլոր անգլիական զորքերը։ Հորդանանը որոշում է ընդունել նաև Ֆրանսիայի նկատմամբ քաղաքական, տնտեսական և կուլտուրական բոյկոտ կիրառելու մասին։

Արաբական ժողովուրդները վճռականորեն

հանդես են գալիս իրենց երկրներում օտարերկրյա մոնոպոլիաների տնտեսական ճնշման դեմ։ Սիրիայում, Լիբանանում, Իրաքում, Սաուդյան Արաբիայում չեն դադարում մասսայական գործադուլները և ելույթները ի նշան բողոքի ընդդեմ տնտեսական ստրկացուցիչ պայմանագրերի և համաձայնագրերի, որոնք այդ պետություններին փաթաթել են օտարերկրյա մոնոպոլիաները։

Այդ պայքարն առանձնապես լայն թափ ընդունեց Եգիպտոսում անգլո-ֆրանս-իսրայելական ագրեսիայի կապակցությամբ։

«Իրաք Պետրոլեում կոմպանի» անգլիական նավթային ընկերության սիրիական բանվորները ի նշան բողոքի ընդդեմ Եգիպտոսում Անգլիայի ինտերվենցիայի, պայթեցրին նավթամուղը, որը պատկանում էր այդ ընկերությանը։

Սիրիական կառավարությունը չեղյալ հայտարարեց անգլիական և ֆրանսիական ընկերությունների հետ ժամանակին կնքված՝ զանազան շինարարական և հետախուզական աշխատանքների մասին բոլոր կոնտրակտները։ Համերաշխվելով Սիրիայի հետ, Հորդանանի պառլամենտը հավանություն տվեց անգլիական ապրանքների բոյկոտի մասին առաջարկությանը։



Լիբանանի պառլամենտը միաձայն հավանություն տվեց օտարերկրյա ընկերությունների վրա հարկեր սահմանելու օրինագծին։ Այդ ընկերությունները հատուկ օրենքների համաձայն հարկ դնելու ժամանակ օգտվում էին արտոնություններից և առավելություններից։

Արաբական ժողովուրդների վճռական դիմադրությունը Մերձավոր և Միջին Արևելքում առաջ է բերում ամերիկյան իմպերիալիզմի էքսպանսիան, որը, մասնավորապես, տեղի է ունենում այսպես կոչված Տրումենի ծրագրի չորրորդ կետի պիտակի տակ, որը ԱՄՆ-ի տնտեսական «օգնություն» է նախատեսում մյուս երկրներին՝ ստրկացուցիչ քաղաքական և տնտեսական պայմաններով։

Վերջերս Հորդանանի կառավարությունը հայտարարեց, որ ինքը Հորդանանի շահերին համաձայն քննարկում է ամերիկյան «օգնության» մասին ԱՄՆ-ի հետ կնքված համաձայնագրերի փոփոխման հարցը։ Նման գործողություններ են ձեռնարկում նաև մյուս արաբական երկրների կառավարությունները։ Արաբական երկրների ներքին գործերին օտարերկրյա միջամտության դադարեցման մասին պահանջները պաշտպանություն են գտնում բնակչության բոլոր խավերի մոտ։

Ազգային-ազատագրական շարժման զարգացմանը համապատասխան նախադրյալներ են ստեղծվում որոշ արաբական երկրներում միասնական հակաիմպերիալիստական ճակատ ստեղծելու համար։ Ազգային անկախության, դեմոկրատիայի և պրոգրեսի համար պայքարի միասնական ծրագրով հակաիմպերիալիստական ճակատները, որոնք համազգային մասշտաբով միավորում են յուրաքանչյուր երկրի հայրենասիրական պրոգրեսիվ ուժերը, արդեն սկսել են ստեղծվել Ալժիրում, Հորդանանում, Սիրիայում և մյուս արաբական երկրներում։ Զանազան քաղաքական պարտիաների, դեմոկրատական կազմակերպությունների և կրոնական խմբերի հակաիմպերիալիստական գործողությունների միավորումը այդ գործողություններին տալիս է մարտական մեծ ուժ։

Վերջերս Սիրիայի կոմունիստական պարտիան դիմում հրապարակեց, որը երկրի բոլոր քաղաքական պարտիաներին ազգային ճակատ ստեղծելու կոչ է անում։

Հորդանանում պառլամենտական ընտրությունների ժամանակ 1956 թվականի հոկտեմբեր ամսին, հաջողությամբ հանդես եկավ ազգային ճակատը, որի կազմի մեջ մտնում է կոմունիստական պարտիան։ Երկ-



րի պատմության մեջ առաջին անգամ դեպուտատական մանդատներ ստացան կոմունիստները։ Հորդանանի պառլամենտի ընտրությունները որոշակիորեն ցուցադրեցին Հորդանանի ժողովրդի ձգտումը իր երկրի ազգային անկախությունը պաշտպանելու և նրան Բաղդադի պակտի մեջ ընդգրկելը թույլ չտալու մասին։

Իմպերիալիստական գաղութարարների դեմ իր ազատության և ազգային անկախության համար պայքարող արաբական երկրների ժողովուրդների արդար գործը պաշտպանում է ամբողջ առաջադեմ մարդկությունը։

Սովետական պետությունը իր ամբողջ պատմության ընթացքում միշտ պաշտպանել է այդ արդարացի պայքարը։ Դրանով Սովետական Միությունը նվաճել է արաբական ժողովուրդների հարգանքն ու երախտագիտությունը։ Սովետական մարդկանց համակրանքը այսուհետև էլ կլինի արաբական ժողովուրդների կողմում, որոնք պայքարում են ազատության և իրենց երկրների անկախության համար։

---

# ԱԼԲԱՆԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԻ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

(Թվեր և փաստեր)

*Այս տարվա հունվարի 11-ին լրացավ Ալբանիայում ժողովրդական ռեսպուբլիկայի հաստատման 12-րդ տարեդարձը։ Անցած այդ տարիների ընթացքում ալբանական ժողովուրդը իր աշխատանքի պարտիայի և հարազատ կառավարության ղեկավարությամբ հսկայական հաջողություններ է ձեռք բերել արդյունաբերության և գյուղատնտեսության զարգացման, կուլտուրական շինարարության և ժողովրդական տնտեսության մյուս բնագավառներում։*

*Ժողովրդա-դեմոկրատական կարգերի հաստատման, Սովետական Միության և սոցիալիստական լագերի երկրների ժողովուրդների անշահախնդիր օգնության շնորհիվ, ալբանական ժողովուրդը ընթանում է սոցիալիզմի ուղիով, կերտում է իր լուսաշող ապագան։ Ճանրային տնտեսության զարգացման ուղ-*



*ղությամբ ալբանական ժողովրդի ձեռք բերած հաջողությունների մասին են խոսում ստորև բերված թվերն ու փաստերը։*

*☆ Ալբանիայի ժողովրդական տնտեսության զարգացման առաջին հնգամյա պլանի հիմնական խնդիրն էր՝ Ալբանիան հետամնաց գյուղատնտեսական երկրից վերածել գյուղատնտեսական-արդյունաբերական երկրի, որը հաջողությամբ կատարված է։ Արդյունաբերության արտադրության ծավալը 1955 թվականին, 1938 թվականի համեմատությամբ, ավելացել է գրեթե տաս ու կես անգամ, նույն ժամանակաշրջանի համեմատությամբ քրոմի հանքանյութի արդյունահանումը ավելացել է 17,4 անգամ, քարածխի հանույթը՝ 54 անգամ, էլեկտրաէներգիայի արտադրությունը՝ 10 անգամ, թեթև արդյունաբերության արտադրանքը՝ 26 անգամ։ Միայն առաջին հնգամյակի տարիներին Ալբանիայում կառուցվել են ավելի քան 150 արդյունաբերական ձեռնարկություններ և արհեստանոցներ։*

*☆ Երկրորդ հնգամյակի ընթացքում արդյունաբերության արտադրանքը 1955 թվականի համեմատությամբ ավելանալու է 91 տոկոսով, ըստ որում արտադրության միջոցների արտադրությունը՝ 102։ Առաջին հերթին*

*զարգանալու է լեռնահանքային արդյունաբերությունը։*

☆ *Անցյալի հետ համեմատած նշանակալից հաջողությունների է հասել Ալբանիայի գյուղատնտեսությունը։ Գյուղատնտեսության համախառն արտադրանքը 1955 թվականին, 1950 թվականի համեմատությամբ, աճել է 37 տոկոսով։ Գյուղատնտեսության մեջ վերջին տարիներում մուտք են գործել և հաջողությամբ մշակվում են այնպիսի թանկարժեք տեխնիկական կուլտուրաներ, ինչպիսիք են՝ բամբակը և շաքարի ճակնդեղը։*

☆ *Եթե 1950 թվականին Ալբանիայում կար 90 գյուղատնտեսական արտադրական կոոպերատիվ, ապա 1956 թվականի հոկտեմբեր ամսին այն հասավ 758-ի, որոնք ներկայումս վերաղեցնում են ամբողջ մշակելի ցանքատարածության 33 տոկոսը։ Այդ արտադրական կոոպերատիվները սպասարկելու համար պետության կողմից ստեղծվել են 21 մեքենատրակտորային կայաններ։*

☆ *Երկրորդ հնգամյակում, այսինքն 1960 թվականին լուծվելու է հացահատիկի պրոբլեմը և զգալիորեն ավելանալու է անասնաբուծության արտադրանքը։*

☆ *Երկրի տնտեսության հզորության աճման հետ միասին, բարձրացել է նաև աշխա-*



*տավորության կենսամակարդակը։ Առաջին հնգամյակի տարիներին երկրի ազգային եկամուտը ավելացել է մոտավորապես 70 տոկոսով, բանվորների և ծառայողների ռեալ աշխատավարձը՝ մոտ 20 տոկոսով, իսկ գյուղացիության եկամուտը՝ համարյա 35 տոկոսով։*

☆ *Խոշոր աշխատանք է կատարված երկրում բնակչության անգրագիտությունը վերացնելու ուղղությամբ։ Առաջ եթե բնակչության յուրաքանչյուր հարյուր մարդուց քիչ թե շատ գրագետ էին հազիվ մեկ—երկու հոգի, ապա ներկայումս մինչև 40 տարեկան հասակ ունեցող մարդկանց մեջ իսպառ վերացված է անգրագիտությունը։*

☆ *Անճանաչելիորեն փոխվել է Ալբանիայի մայրաքաղաք Տիրանան։ Խղճուկ տնակների, ծուռ ու մուռ և կեղտոտ փողոցների փոխարեն, ներկայումս բարձրացել են գեղեցիկ ու բազմահարկ տների, հասարակական և պետական շենքերի կորպուսները, ձգվել են ասֆալտապատված լայն ու մաքուր փողոցները։ Քաղաքը վերածվել է ռեսպուբլիկայի արդյունաբերական խոշոր կենտրոնի։ Կառուցվել են նոր տեխնիկայով հագեցված ու սարքավորված բազմաթիվ արդյունաբերական ձեռնարկություններ, օրինակ, տե-*

քըստիլ կոմբինատ, մեխանիկական և մետաղամշակման գործարաններ, կոշիկի և կահույքի ֆաբրիկաներ, կարի և տրիկոտաժի մի շարք ձեռնարկություններ։

☆ Ներկայումս Տիրանան 12 անգամ ավելի շատ արդյունաբերական արտադրանք է տալիս, քան 1938 թվականին։ Ալբանական ժողովրդի ստեղծագործ աշխատանքի շնորհիվ ռեսպուբլիկայում ստեղծվել են մի շարք արդյունաբերական նոր քաղաքներ ու ավաններ, ինչպես, օրինակ, Մալիկը, Մեմալիաջը, Սելենիցան, Յերրիկը և այլն։

☆ Տիրանան վերածվել է նաև կուլտուրայի խոշոր կենտրոնի։ Այստեղ ներկայումս գործում են 6 բարձրագույն ուսումնական հաստատություն, Գիտությունների ինստիտուտ՝ իր մի շարք գիտահետազոտական հիմնարկներով, Ալբանիայի աշխատանքի պարտիայի պատմության ինստիտուտ, երեքամյա պարտիական դպրոց, 25 տարրական և յոթնամյա դպրոց, 12 միջնակարգ դպրոց և տեխնիկում, բազմաթիվ թանգարաններ, թատրոններ, կինոթատրոններ և ակումբներ։

---

ՉԻՆԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ՂԵԿԱՎԱՐՆԵՐԸ

## ԼՅՈՒ ՇԱՈ-ՑԻ

Ընկեր Լյու Շաո-ցին ծնվել է 1890 թվականին, Խունանի նահանգում, գյուղացու ընտանիքում։ Դեռ միջնակարգ դպրոցից նա մասնակցում է ռևոլյուցիոն շարժմանը։ 1920 թվականին Լյու Շաո-ցին մտնում է Երիտասարդության սոցիալիստական միության մեջ, իսկ 1921 թվականին՝ կոմունիստական պարտիայի մեջ։

Լյու Շաո-ցին ակտիվ մասնակցում է պրոֆմիութենական շարժմանը։ 1922 թվականին նա աշխատում է Համաչինական բանվորական քարտուղարությունում (Շանհայ), իսկ դրանից հետո լինում է ՉԿՊ Խունանի կոմիտեի անդամ։

1925 թվականի աշնանը Խունանի ռեակցիոն իշխանությունները ձերբակալում են Լյու Շաո-ցիին, բայց աշխատավորների բողոքի լայն ճնշման տակ շուտով ազատում են բանտից։ Դրանից հետո Լյու Շաո-ցին աշխատում է պրոֆմիությունների Համաչինական ֆեդերացիայի Գլխավոր վարչու-

թյունում՝ նախ Կանտոնում և ապա Խանկոում։ 1927 թվականին նա ընտրվում է ՉԿՊ Կենտկոմի անդամ։

1931 թվականի հունվարին Լյու Շաո-ցին ընտրվում է ՉԿՊ Կենտկոմի Քաղբյուրոյի անդամ։ 1931 թվականի աշնանից նա աշխատում է ՉԿՊ Կենտկոմի պրոֆշարժման բաժնում, իսկ դրանից հետո դառնում է ՉԿՊ Ֆուցզյանի նահանգային կոմիտեի քարտուղար։ Դեպի հյուսիս-արևմուտք կատարված Մեծ արշավանքի ժամանակ Լյու Շաո-ցին աշխատում է որպես Կենտկոմի ներկայացուցիչ 8-րդ և 5-րդ կորպուսներում, իսկ դրանից հետո նա նշանակվում է 3-րդ կորպուսի քաղբաժնի պետ։ 1936 թվականին Լյու Շաո-ցին նշանակվում է ՉԿՊ Կենտկոմի Հյուսիս-Չինական բյուրոյի քարտուղար, 1938 թվականին՝ ՉԿՊ Կենտրոնական—Չինական բյուրոյի քարտուղար, իսկ 1941 թվականին՝ Նոր, 4-րդ բանակի քաղաքական կոմիսար։

1943 թվականից Լյու Շաո-ցին ՉԿՊ Կենտկոմի քարտուղար է և Չինաստանի Ժողովրդա-Ռևոլյուցիոն ռազմական խորհրդի նախագահի տեղակալ։ Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի հռչակումից հետո նա ընտրվում է Կենտրոնական Ժողովրդա-



կան կառավարության նախագահի տեղակալ և Ժողովրդա-ռևոլյուցիոն ռազմական խորհրդի նախագահի տեղակալ։

1949—1953 թվականներին Լյու Շաո-ցին Պրոֆմիությունների համաշխարհային ֆեդերացիայի փոխնախագահ էր։

Ժողովրդական ներկայացուցիչների Համաչինական ժողովի առաջին սեսիայում, որը կայացավ 1954 թվականի սեպտեմբերին, Լյու Շաո-ցին ընտրվում է Ժողովրդական ներկայացուցիչների Համաչինական ժողովի մշտական Կոմիտեի նախագահ։ Միաժամանակ նա չին-սովետական բարեկամության ընկերության նախագահ է և պրոֆմիությունների Համաչինական ֆեդերացիայի պատվավոր նախագահ։

## ՉԺՈՈՒ ԷՆ-ԼԱՅ

Ընկեր Չժոու Էն-լայը ծնվել է 1898 թվականին, Ցզյանսուի նահանգում, ինտելիգենտի ընտանիքում։ Մանկական տարիներին սովորել է Շենյանում և Տյանցզինում։ 1917 թվականից մինչև 1919 թվականը նա սովորել է Ճապոնիայում, իսկ Չինաստան վերադառնալուց հետո մտել է Տյանցզինի «Նանկայ» համալսարանը։

Ռևոլյուցիոն շարժմանը մասնակցելու համար Չժոու Էն-լայը ձերբակալվում և ավելի քան մեկ ու կես տարի բանտ է նստում։ Բանտից դուրս գալուց հետո նա սովորելու է գնում Ֆրանսիա, որտեղ կազմակերպում է կոմունիստական խումբ՝ բաղկացած չին էմիգրանտներից։

Չինաստան վերադառնալուց հետո (1924 թվականին) Չժոու Էն-լայը աշխատում է որպես Խունապուի (Վամպու) ռազմական դըպրոցի քաղաքական բաժնի պետ և ՉԿՊ Գուդան-դունի կոմիտեի քարտուղար։ Չժոու Էն-լայը ակտիվ կերպով մասնակցում է 1924—1927 թվականների ռևոլյուցիային։ Նա Շանհայի ռևոլյուցիոն շարժման, Նանչանի օգոստոսի 1-ի ապստամբության ղեկավարներից և Կանտոնի կոմունայի մասնակիցներից մեկն է։

1927 թվականին Չժոու Էն-լայը ընտրվում է ՉԿՊ Կենտկոմի անդամ, իսկ այնուհետև՝ ՉԿՊ Կենտկոմի Քաղբյուրոյի անդամ և Կենտկոմի քարտուղար։

1936 թվականին Չժոու Էն-լայը գլխավորում է Կոմունիստական պարտիայի պատվիրակությունը՝ հակայապոնական միասնական ազգային ճակատ ստեղծելու շուրջը Գո-



մինդանի հետ բանակցություններ վարելու համար։ Այն բանից հետո, երբ 1937 թվականի սեպտեմբերին համաձայնություն է ձեռք բերվում Գոմինդանի հետ, Չժոու Էն-լայը նշանակվում է կոմունիստական պարտիայի ներկայացուցիչ գոմինդանական Չինաստանի ժամանակավոր մայրաքաղաք Չունցինում։ 1936—1946 թվականներին նա ՉԿՊ Կենտկոմի անունից բազմիցս բանակցություններ է վարում Գոմինդանի հետ։ 1945 թվականին Չժոու Էն-լայը վերստին ընտրվում է ՉԿՊ Կենտկոմի Քաղբյուրոյի անդամ և Կենտկոմի քարտուղար։

Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկա կազմվելուց հետո Չժոու Էն-լայը նշանակվում է Պետական Ադմինիստրատիվ Խորհրդի պրեմյեր, արտաքին գործերի մինիստր և Կենտրոնական ժողովրդական կառավարության ժողովրդա-ռևոլյուցիոն ռազմական խորհրդի նախագահի տեղակալ։ 1954 թվականին նրան հաստատում են Պետական Խորհրդի պրեմյեր և արտաքին գործերի մինիստր։ Չժոու Էն-լայը միաժամանակ Չինաստանի Ժողովրդական քաղաքական կոնսուլտատիվ խորհրդի Համաչինական Կոմիտեի նախագահ է։

## ՉԺՈՒ ԴԵ

*Ընկեր Չժու Դեն ծնվել է 1886 թվականին, Իլունի գավառում (Սիչուանի նահանգ), գյուղացու ընտանիքում։ Նա ծառայել է Յունան նահանգի տեղական զորքերում՝ որպես շարքային։ Ռազմական դպրոցն ավարտելուց հետո նա տարել է հրամանատարական մի շարք պաշտոններ, եղել է գնդի հրամանատար։ Ակտիվ կերպով մասնակցել է 1911 թվականի ռևոլյուցիային։ Հենց այդ ժամանակ էլ մտել է Գոմինդանի մեջ։*

*1922 թվականին Չժու Դեն իր կրթությունը շարունակում է Գերմանիայում, որտեղ և շուտով մտնում է կոմունիստական պարտիայի մեջ։ 1925—1926 թվականներին նա սովորում է Մոսկվայում՝ Արևելքի աշխատավորների Կոմունիստական համալսարանում, որից հետո վերադառնում է հայրենիք։ Նա աշխատում է ժողովրդական բանակում, գրավելով մի շարք քաղաքական պոստեր։*

*Շուտով Չժու Դեն նշանակվում է Չինաստանի Բանվորա-Գյուղացիական Կարմիր բանակի գերագույն հրամանատար և առա-*



*ջին ռազմաճակատի հրամանատար։ 1931 թվականին, բանվորական և գյուղացիական դեպուտատների Համաչինական առաջին համագումարում, նա ընտրվում է Ռազմածովային գործերի ժողովրդական կոմիսար։*

*1937 թվականին, յապոնական զավթիչների դեմ պատերազմ սկսվելուց հետո, Կարմիր բանակի գլխավոր ուժերը վերակազմվում են 8-րդ բանակի։ Չժու Դեն նշանակվում է այդ բանակի գերագույն հրամանատար։*

*1946 թվականից Չժու Դեն Չինաստանի ժողովրդա-ազատագրական բանակի գերագույն հրամանատարն է։ Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկա կազմվելուց հետո նա դառնում է Կենտրոնական ժողովրդական կառավարության Նախագահի տեղակալ և Ժողովրդա-ռևոլյուցիոն ռազմական խորհրդի նախագահի տեղակալ։*

*1954 թվականի սեպտեմբերին, ժողովրդական ներկայացուցիչների Համաչինական ժողովի առաջին սեսիայում, Չժու Դեն ընտրվում է Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի Նախագահի տեղակալ և պաշտպանության պետական կոմիտեի Նախագա-*

հի տեղակալ։ 1955 թվականի սեպտեմբերին նրան շնորհվում է Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի մարշալի կոչում։ Նա պարգևատրված է Օգոստոսի 1-ի առաջին աստիճանի, Անկախության և ազատության առաջին աստիճանի և Ազատագրության առաջին աստիճանի շքանշաններով։

Չժու Դեն ՉԿՊ Կենտկոմի անդամ է 1930 թվականից, ՉԿՊ Կենտկոմի Քաղբյուրոյի անդամ՝ 1931 թվականից։ 1945 թվականին նա ընտրվում է ՉԿՊ Կենտկոմի քարտուղար։

---



# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## 1. ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ԴԵՊՈՒՏԱՏՆԵՐԻ ՏԵՂԱԿԱՆ ՍՈՎԵՏՆԵՐԻ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Հայկական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկայի Կոնստիտուցիա *(Հիմնական Օրենք)*։

Կանոնադրություն Հայկական ՍՍՌ աշխատավորների դեպուտատների շրջանային, քաղաքային, գյուղական և ավանային Սովետների ընտրությունների։

*Հայնորեն ծավալել ընտրությունների նախապատրաստությունը, «Ս. Հ.»-ի 1957 թվականի հունվարի 10-ի առաջնորդողը։*

## 2. ՍՈՎԵՏԱԿԱՆ ԲԱՆԱԿԻ ԵՎ ՌԱԶՄԱ-ԾՈՎԱՅԻՆ ՆԱՎԱՏՈՐՄԻ ՕՐԸ

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Ճառ արտասանած «Կարմիր սպայի օրը» *1918 թ. նոյեմբերի 24-ին, Երկեր, Հատոր 28, էջ 238—239։*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Ճառ Խոդինկայում Կարմիրբանա-

կայքեների միտինգում 1918 թ. օգոստոսի 2-ին, *Երկեր, հատոր 28, էջ 37*։

Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության Կոնստիտուցիա (*Հիմնական Օրենք*)։

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XX համագումարի բանաձևը ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի հաշվետու զեկուցման վերաբերյալ, *Հայպետհրատ, 1956*։

### 3. ՀԱՅՆՈՐԵՆ ՕԳՏԱԳՈՐԾԵԼ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ՆՈՐԱՐԱՐՆԵՐԻ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՓՈՐՁԸ

#### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ— Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի հաշվետու զեկուցումը Պարտիայի XX համագումարին, *Հայպետհրատ, 1956, էջ 58—76*։

Ն. Ա. ԲՈՒԼԳԱՆԻՆ— Զեկուցում ՍՄԿՊ XX համագումարի Դիրեկտիվների մասին, *Հայպետհրատ, 1956, էջ 38—56*։

Արտադրության ռացիոնալիզատորների, գյուտարարների և նորարարների Համամիութենական խորհրդակցության մասնակիցների ԴԻՄՈՒՄԸ *Սովետական Միության բոլոր բանվորներին ու բանվորուհիներին, ինժեներա-տեխնիկական աշխատողներին և ծառայողներին, գիտության և տեխնիկայի գործիչներին, տպա-*



*գըրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի հոկտեմբերի 26-ի համարում*։

Ապահովել ձեռնարկությունների համաչափ աշխատանքը, *«Ս. Հ.»-ի 1957 թվականի հունվարի 9-ի առաջնորդողը*։

### 4. ԾԱՆՐ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅՈՒՆԸ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԲՈԼՈՐ ՃՅՈՒՂԵՐԻ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՀԻՄՔՆ Է

#### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Լավ է քիչ, բայց լավ, *Երկեր, հատոր 23, էջ 579—599, Հայպետհրատ, 1952*։

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XX համագումարի բանաձևը ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի հաշվետու զեկուցման վերաբերյալ, *Հայպետհրատ, 1956*։

ՍՄԿՊ Կենտկոմի Դեկտեմբերյան պլենումի որոշումները մեր աշխատանքի մարտական ծրագիրն են, *«Պրավդա»-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի դեկտեմբերի 27-ի համարում*։

### 5. ԳԼԽԱՎՈՐԸ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԱՐՏԱԴՐՈՂԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԲԱՐՁՐԱՑՈՒՄՆ Է

#### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Ռ. Կ. (բոլշևիկների) Պարտիայի ծրագրի նախագիծը, *Երկեր, հատոր 29, էջ 130—137, Հայպետհրատ, 1951*։

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Սովետական իշխանության հերթա-

կայքնների միտինգում *1918 թ. օգոստոսի 2-ին, Երկեր, հատոր 28, էջ 37։*

Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության Կոնստիտուցիա (*Հիմնական Օրենք*)։

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XX համագումարի բանաձևը ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի հաշվետու զեկուցման վերաբերյալ, *Հայպետհրատ, 1956*։

### 3. ՀԱՅՆՈՐԵՆ ՕԳՏԱԳՈՐԾԵԼ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ՆՈՐԱՐԱՐՆԵՐԻ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՓՈՐՁԸ

#### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ— Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի հաշվետու զեկուցումը Պարտիայի XX համագումարին, *Հայպետհրատ, 1956, էջ 58—76*։

Ն. Ա. ԲՈՒԼԳԱՆԻՆ— Զեկուցում ՍՄԿՊ XX համագումարի Դիրեկտիվների մասին, *Հայպետհրատ, 1956, էջ 38—56*։

Արտադրության ռացիոնալիզատորների, գյուտարարների և նորարարների Համամիութենական խորհրդակցության մասնակիցների ԴԻՄՈՒՄԸ *Սովետական Միության բոլոր բանվորներին ու բանվորուհիներին, ինժեներա-տեխնիկական աշխատողներին և ծառայողներին, գիտության և տեխնիկայի գործիչներին, տպա-*



*գըրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի հոկտեմբերի 26-ի համարում։*

Ապահովել ձեռնարկությունների համաչափ աշխատանքը, *«Ս. Հ.»-ի 1957 թվականի հունվարի 9-ի առաջնորդողը։*

### 4. ԾԱՆՐ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅՈՒՆԸ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԲՈԼՈՐ ՃՅՈՒՂԵՐԻ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՀԻՄՔՆ Է

#### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Լավ է քիչ, բայց լավ, *Երկեր, հատոր 23, էջ 579—599, Հայպետհրատ, 1952*։

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XX համագումարի բանաձևը ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի հաշվետու զեկուցման վերաբերյալ, *Հայպետհրատ, 1956*։

ՍՄԿՊ Կենտկոմի Դեկտեմբերյան պլենումի որոշումները մեր աշխատանքի մարտական ծրագիրն են, *«Պրավդա»-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի դեկտեմբերի 27-ի համարում։*

### 5. ԳԼԽԱՎՈՐԸ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԱՐՏԱԴՐՈՂԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԲԱՐՁՐԱՑՈՒՄՆ Է

#### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Ռ. Կ. (բոլշևիկների) Պարտիայի ծրագրի նախագիծը, *Երկեր, հատոր 29, էջ 130—137, Հայպետհրատ, 1951*։

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Սովետական իշխանության հերթա-

կան խնդիրները, *Երկեր, հատոր 29, էջ 237—258, Հայպետհրատ, 1951։*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— *Մեծ նախաձեռնություն, Երկեր, Հատոր 29, էջ 501—533։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ— Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի հաշվետու զեկուցումը Պարտիայի XX համագումարին, *էջ 58—76, Հայպետհրատ, 1956։*

ՍՄԿՊ Կենտկոմի Դեկտեմբերյան պլենումի որոշումները մեր աշխատանքի մարտական ծրագիրն են, *«Պրավդա»-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի դեկտեմբերի 27-ի համարում։*

### 6. ԽՆԱՄՔՈՎ ՊԱՀՊԱՆԵՆՔ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ՏԵԽՆԻԿԱՆ ՁՄՌԱՆ ԸՆԹԱՑՔՈՒՄ

#### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ— Գյուղատնտեսության մեքենայացումը, ՍՄԿՊ XX համագումարին տված զեկուցումից, *էջ 94—97, Հայպետհրատ, 1956։*

Թոստովի մարզի ՄՏԿ-ների և սովխոզների տրակտորիստների, կոմբայնավարների, նորոգող բանվորների, տրակտորային բրիգադների բրիգադիրների, ինժեներա-տեխնիկական աշխատողների ԴԻՄՈՒՄԸ *Սովետական Միության գյուղատնտեսության բոլոր մեխանիզատորներին, տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի հունվարի 9-ի համարում։*

*Մեխանիզացիան և էլեկտրիֆիկացիան, նյութեր ՄՏ*



*կայանների աշխատանքների մասին, տպագրված «Հայաստանի կոլտնտեսական» ամսագրի 1956 թվականի 12-րդ համարում, էջ 37—47։*

### 7. ԲԱԶՄԱԿՈՂՄԱՆԻՈՐԵՆ ՆԱԽԱՊԱՏՐԱՍՏՎԵՆՔ ԴԱՐՆԱՆԱՑԱՆԻՆ

#### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԲՈՒԼԳԱՆԻՆ— Գյուղատնտեսության բնագավառի խնդիրները, *ՍՄԿՊ XX համագումարին տված զեկուցումից, էջ 56—64, Հայպետհրատ, 1956։*

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի և ՍՍՌ Միության Մինիստրների Սովետի ԴԻՄՈՒՄԸ *կոլտնտեսականներին և կոլտնտեսուհիներին, ՄՏԿ-ների և սովխոզների բանվորներին, պարտիական, արհմիութենական ու կոմերիտական կազմակերպություններին, Սովետական և գյուղատնտեսական օրգաններին, գյուղատնտեսության մասնագետներին ու բոլոր աշխատողներին, տպագրված «Ս. Հ».ի 1957 թվականի հունվարի 17-ի համարում։*

*Գերազանց նախապատրաստվել գարնանացանին, «Ս. Հ.»-ի 1956 թվականի դեկտեմբերի 22 առաջնորդողը։*

Բասարգեչարի շրջանի կոլտնտեսականների, մեխանիզատորների ու մասնագետների ԴԻՄՈՒՄԸ *ռեսպուբլիկայի գյուղատնտեսության բոլոր աշխատողներին, տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի հունվարի 11-ի համարում։*



8. ՄՍՈՒՐԱՅԻՆ ՇՐՋԱՆՈՒՄ ԱՆԱՍՈՒՆՆԵՐԻ ՌԱՑԻՈՆԱԼ ԿԵՐԱԿՐՈՒՄԸ ԵՎ ԼԱՎԱԳՈՒՅՆ ԽՆԱՄՔԸ ԱՆԱՍՆԱԲՈՒԾՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ԿԱՐԵՎՈՐԱԳՈՒՅՆ ՄԻՋՈՑՆԵՐԻՑ ՄԵԿՆ Է

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ— Անասնաբուծության հետագա վերելքի խնդիրները, *ՍՄԿՊ XX համագումարին տված զեկուցումից, էջ 88—93, Հայպետհրատ, 1956։*

Անասնաբուծություն, *նյութեր առաջավոր անասնապահների աշխատանքի մասին, տպագրված «Հայաստանի կոլտնտեսական» ամսագրի 1956 թվականի 12-րդ համարում։*

Բարձրացնել անասնաբուծության մթերատվությունը, *«Ս. Հ.»-ի 1957 թվականի հունվարի 12-ի առաջնորդողը։*

9. ՕՐԻՆԱԿԵԼԻՈՐԵՆ ՆԱԽԱՊԱՏՐԱՍՏԵՆՔ ՋԵՐՄՈՑԱՅԻՆ ՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆԸ ԳԱՐՆԱՆԱՑԱՆԻՆ

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

*(Օգտագործել տեղական նյութերը)*

10. ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅՈՒՆԸ ՊԱՅՔԱՐՈՒՄ Է ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ ԱՄԲՈՂՋ ԱՇԽԱՐՀՈՒՄ

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Սովետական Միության և Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայի կառավարական պատվիրակությունների համատեղ հայտարարությունը, *տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի հունվարի 8-ի համարում։*

Մերձավոր ու Միջին Արևելքում Միացյալ Նահանգների քաղաքականության մասին, ՏԱՍՍ-ի հայտարարությունը *այսպես կոչված «Էյզենհաուերի Դոկտրինայի» կապակցությամբ, տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի հունվարի 15-ի համարում։*



---

СОДЕРЖАНИЕ



---

Խմբագիր՝ Վ. ԲԶՆՈՒՆԻ

# ՆՈՐ ԳՐՔԵՐ

Ն. ԶԱՐՅԱՆ— Երկեր: *Հատոր 5-րդ: Գինը 8 ռ. 10 կ., 270 էջ, տիրաժ 5.000:*

Հունգարական ժողովրդական հեքիաթներ: *Գինը 3 ռ. 50 կ., 130 էջ, տիրաժ 10.000:*

*Հ. ՕՐԲԵԼԻ—* «Հայկական հերոսական էպոսը»: *Գինը 3 ռ. 60 կ., 137 էջ, տիրաժ 5.000:*

*Վ. ԹԵՐԶԻԲԱՇՅԱՆ—* «Շեքսպիրը հայերեն»: *Գինը 4 ռ. 55 կ., 135 էջ, տիրաժ 2.000:*

*Պ. ԲԱԺՈՎ—* «Մալախիտե զարդատուփ»: *Գինը 8 ռ., 386 էջ, տիրաժ 10.000:*

*Ս. ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆ—* «Արյունոտ անապատ»: *Գինը 2 ռ. 20 կ., 79 էջ, տիրաժ 3.000:*

**Отдел пропаганды и агитации**
**ЦК КП Армении**
**БЛОКНОТ АГИТАТОРА**

**№ 2** **1957 г.**

*ՎՖ 00693* *Պատվեր 85* *Տիրաժ 8250*

ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության հրատարակչությունների և պոլիգրաֆ արդյունաբերության գլխավոր վարչության II տպարան, Երևան, Կնունյանցի № 8.

Գինը 50 կոպ.